## Քաղաքին վիճակը

Փոխադրական միջոցներու այս յանկարծական դադարումը բնականաբար անդամալուծեց մայրաքաղաքին գործունէութիւնը: Բանթոզները գըրաւած էին բոլոր մթերանոցները, իսկ ոստիկանութիւնը շարժման մէջ դրուած էր սեւէ հաւանականութեան առջեւ պատրաստ գտնուելու համար:

Անոնք որ իրենց աշխատավայրէն հեռու էին, չէին կրնար մեկնիլ: Մաս մը հեծանիւները շարժման մէջ դրին, իսկ ուրիշներ իրենց սրունքներուն ույժ տուին գէթ իրենց օրավարձը չկորսնցնելու համար նիւթական այս անձուկ վիճակին ու սղութեան առջեւ:

Անհամար աշխատանոցներ փակ մնացին կամ դանդաղ աշխատեցան, իսկ դատարկ մնացող ժողովուրդը կը թափառէր իր թաղին մէջ կամ հրապարակներու վրայ կը հաւաքուէին օրուան վիճակին մասին վիճելու կամ խօսելու համար: Այնպէս որ, փողոցները ամայի չէին:

Կառավարութիւնը կոչ ըրած ըլլալով փոխադրական ուրիշ միջոցներու, քամիոններ եւ օթօքարներ շրջան կ'ընէին, բայց բնականաբար ամէն մարդ չէր կրնար ունենալ զանոնք: Սակաչարժները (թաքսի) ոսկեղէն գործունէութիւն մը ունեցան:

Փարիզ երկաթուղիի գլխաւոր կայարաններու միջեւ հաղորդակցութեան համար օթօքարներ տրամադրուած էին, թէեւ անբաւական, խուժող բազմութեան:

## Անգլիոյ ազդարարութիւնը Սուրիոյ

Բրիտանական կառավարութիւնը խստօրէն ազդարարած է Սուրիոյ կառավարութեան թէ որքան ատեն որ անգլիական ուժերը կը մնան Պաղեստինի մէջ, Մեծն Բրիտանիա պատասխանատու է երկրին անդորրութեան պահպանումին: Այս ազդարարութիւնը Սուրիոյ վարչապետին ըրած է Դամասկոսի բրիտանական դեսպանատան գործակատարը: Բացատրուած է սուրիական կառավարութեան որ, անկախաբար արաբական դաշնակցութեան որոշումներէն, Լոնտոնի կառավարութիւնը թոյլ չի կրնար տալ որ Սուրիա զօրք համախմբէ Պաղեստինի սահմաններու վրայ եւ վըտանգէ անդորրութիւնը, ինչպէս արդէն նախապէս հաղորդած էինք, արաբական պետութիւնները ծրագիրներ կը մշակեն զինուորական ուժ կազմակերպելու Պաղեստինը պաշտպանելու այն պարագային երբ Անգլիա լքէ իր հոգատարութիւնը:

★ Միացեալ Ազգերու համագումարին շըջանակներէն կը հաղորդեն որ խորհրդային կառավարութիւնը իր հաւանութիւնը յայտնած է Պաղեստինը բաժնելու ծրագրին, բայց դիտել տուած է որ ներկայ պայմաններուն մէջ անկարելի է այդ ծրագրին գործադրութիւնը, նկատի ունենալով Արաբներու եւ Հրեաներու միջեւ գոյութիւն ունեցող վէճը:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵՐԿՐԱՇԱՐԺԻ ցնցումներ տեղի ունեցան Պիրճանի մէջ (Իրան): Մեռած են 210 հոգի:

ԵԳԻՊՏՈՍԻ համաճարակը կը տարածուի անընդհատ: Կիրակիէն երկուշաբթի, քսանըչորս ժամուան մէջ 266 նոր դէպքեր պատահած են. մեռած են 112 հոգի: Մինչեւ հիմա համաճարակին զոհ գացած են 759 հոգի, իսկ վարակուած են 3334 հոգի:

ԱՆԾԱՆՕԹ ահաբեկիչներ սպառնացած ըլլալով սպաննել Անգլիոյ արտաքին նախարարը, ոստիկանութիւնը միջոցներ ձեռք առած է պաշտպանելու համար զինքը:

ԶՕՐԱՎԱՐ ՏԸ ԿՕԼ անցեալ կիրակի օր կարեւոր ճառ մը խօսելով Ալժերիոյ մէջ, բացէ ի բաց յայտարարեց որ Մոսկ. Միութիւնը «կը սպառնայ աշխարհի խաղաղութեան եւ Ֆրանսայի ապահովութեան»: Հազիւ ջախջախած Հիթլէրի տիրապետելու ձգտումները, մեր դիմաց կը գտնենք ուրիշ կայսրամոլութիւն մը, դիտել տուաւ զօրավարը: «Ռուսիա կը շահագործէ Եւրոպայի քաղաքական խառնակութիւնները, նիւթական քայքայումը եւ հոգեկան տագնապը՝ աշխատելով որ իր տնտեսական եւ զինուորական ճնշումին անձնատուր ըլլան բոլոր անոնք որ իր դիմացը կը գտնէ: Ռուսիա պաշտօնեաներ եւ կուսակիցներ ունի որոնք իրենց կառավարութիւնը կը պարտադրեն ուրիշ ազգերու: Մոսկ. Միութիւնը իր ափին մէջ առած է Լեհաստանը, Պալթեան երկիրները, Փրուսիան, Սաքսոնիան, Պուլկարիան, Եուկոսլաւիան եւ Ռումանիան: Իր կարեկցութեան յանձնուած են Ֆինլանտան, Հունգարիան եւ Չեխոսլովաքիան: Ծունկի բերած է Աւստրիան եւ արդէն իջած է Միջերկրական»:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

«Հ. Յ. Դաշնակցութեան Օրը» կը տօնուի Հոկտեմբեր 18ին շաբաթ գիշեր:

Կը խօսի ընկեր ԺԻՐԱՅՐ ՄԻՍԱՔԵԱՆ

×

Հ. Յ. Դ. ՎԱԼԱՆՍԻ Շրջ. կոմիտէն եւ իր խումբերը կը տօնեն ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐը:

ՌՈՄԱՆ Հոկտ. 24 Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին:
ՎԱԼԱՆՍ Հոկտ. 25 շաբաթ երեկոյեան ժամը 8.30ին, Սալ տը Ֆէթի մէջ:

●

ՓՈՆ Տ'ՈՊՆԱՅ 26 Հոկտեմբեր, կիրակի կէս օրէն ետք ժամը 2ին: Կը խնդրուի չխաչաձեւել:
Մանրամասնութիւնները յաջորդաբար:

ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Հ. Յ. Դաշնակցութեան օրը կը տօնուի Կրընոպլի մէջ 19 Հոկտեմբեր, կիրակի կէս օրէն յետոյ «Սաքրէ Քէօր» սրահին մէջ: Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

Կը խօսի ընկեր ԺԻՐԱՅՐ ՄԻՍԱՔԵԱՆ

■

ԻՍԻԻ մէջ Դաշնակցութեան Օրը կը տօնուի Հոկտեմբեր 26ին, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին: Մանրամասնութիւնները շուտով:











ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՒԻԹԻ

Յայտնի դիւցազներգութիւնը, չափահիւսեց

Կ. ՍԱՍՈՒՆԻ

350 մեծադիր էջ, ընտիր տպագրութեամբ, գին՝ 500 ֆրանք: Կը գտնուի Փարիզի հայ գրավաճառներուն մօտ: Տպ. Պէյրութ, 1947:


Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER-AGOPIAN, 17, rue Damesme - 13e


ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ շրջանի բոլոր ենթակոմիտէներու խումբերու վարչութիւնները այսօր չորեքշաբթի երեկոյեան ժամը 7ին, սովորական հաւաքատեղին:

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ Փարիզի մասնաճիւղին Ա. դասախօսութիւնը այս հինգշաբթի, սովորական ժամուն, Սոսիէթէ Սավանթի իրենց հաւաքման վայրը: Դասախօս ընկեր Ժ. ՄԻՍԱՔԵԱՆ: Նիւթ Ամերիկահայ Նոր Սերունդը:

Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Վիէնի մասնաճիւղի վարչութիւնը յանձն. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս շաբաթ ժամը 8ին, Հ. Յ. Դ. Նոր Ակումբը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՆՈՐ ԴՊՐՈՑ.— Ֆրանսահայ Կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղի հայերէնի դասընթացքը կը սկսի Հոկտեմբեր 23ին, հինգշաբթի կէս օրէն վերջ, La Barre, Mairie Annexeի մէջ, 7 rue du Château:

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆՈՒՐՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ 500 ֆրանք կը նուիրէ Ֆր. Կապոյտ Խաչի փոխան ծաղկեպսակի Պ. ԱՍԱՏՈՒՐ ԹԷՄԻՆԵԱՆի տխուր մահուան առթիւ Ստանալ «Յառաջ»էն:

ՄԱՐՍԷՅԼ, ՊՈՄՈՆԻ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի խումբի անդամները իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն Պ. Սարգիս Պօղոսեանի եւ ընկեր Տիգրանի, իրենց աղջկան եւ քրոջ, ընկերուհի ԱՐԱՔՍԻ ՊՕՂՈՍԵԱՆի կսկծալի մահուան առթիւ:

Այս տխուր առթիւ փոխան ծաղկեպսակի հետեւեալ նուիրատուութիւնները եղած են.— Տիկ. Լէֆքանեան 500 ֆրանք Պոմոնի Նոր Սերունդին եւ 500 ֆրանք Պոմոնի Կապոյտ Խաչին, Պ. Գ. Փիլիկեան 500 ֆրանք Պոմոնի Նոր Սերունդին եւ 500 Ֆր. Սէն Լուի Նոր Սերունդին, Այրի Տիկին Սոֆի Ոսկեան 500 Ֆր. Պոմոնի Նոր Սերունդին:

